Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 5 ՄԱՐՏ 1954

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս Հ—52—78։



# ԼԵՆԻՆԻ ԳՈՐԾԻ ՄԵԾ ՇԱՐՈՒՆԱԿՈՂԸ

*Մեկ տարի առաջ, 1953 թվականի մարտի 5-ին, վախճանվեց հանճարեղ Լենինի հավատարիմ աշակերտ ու զինակից, նրա գործի մեծ շարունակող Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինը։*

*Ի. Վ. Ստալինի անունը անսահմանորեն թանկ է մեր երկրի ժողովուրդների, ամբողջ աշխարհի աշխատավորների համար։ Նրա ամբողջ կյանքը նվիրված էր բանվոր դասակարգին ու բոլոր աշխատավորներին շահագործողների լծից ազատագրելու գործին, կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարի գործին։ Ի. Վ. Ստալինի կյանքն ու գործունեությունը ժողովրդին ծառայելու, աշխատավոր մասսաների շահերի համար, նրանց ազատ ու երջանիկ կյանքի համար հերոսական, անձնվեր պայքար մղելու ոգեշնչող օրինակ է։*

*Ավելի քան կես դար առաջ, երբ Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ առաջին քայլերն էին արվում Ռուսաստանում ռևոլյուցիոն*

մարքսիստական պարտիա կառուցելու ասպարեզում, Ի. Վ. Ստալինը անսասան հավատով տոգորվեց դեպի Լենինի ռևոլյուցիոն հանճարը և ընթացավ Լենինի ուղիով։ Նա անդուլ կերպով պայքարում էր լենինիզմի գաղափարների կենսագործման համար։ «Ինչ վերաբերում է ինձ,— ասել է Ի. Վ. Ստալինը,— ապա ես Լենինի աշակերտն եմ միայն, և իմ կյանքի նպատակն է՝ լինել նրա արժանավոր աշակերտը» (Երկեր, հատ. 13, էջ 116)։

Ղեկավարվելով Վ. Ի. Լենինի ուսմունքով, Ի. Վ. Ստալինը օպորտունիստների ոտնձգություններից պաշտպանեց պարտիայի լենինյան իդեոլոգիական, կազմակերպական, տակտիկական և թեորիական հիմքերը, պարտիական մասսաներին համախմբեց լենինիզմի մարտական դրոշի ներքո։

Ռևոլյուցիայի հանճար Լենինի կողմից ստեղծված ու կոփված մեր պարտիան անցել է հերոսական պայքարի, դժվարին փորձությունների և համաշխարհային-պատմական հաղթանակների կեսդարյա փառապանծ ուղի։

Կազմակերպելով բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության մարտական դաշինքը, Կոմունիստական պարտիան մարդ-



կության հանճար Վ. Ի. Լենինի գլխավորությամբ ապահովեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը, պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակը մարդկության պատմության մեջ բացեց նոր դարագլուխ՝ կապիտալիզմի կործանման և կոմունիզմի հաղթանակի դարագլուխը։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո Կոմունիստական պարտիան դարձավ կառավարող պարտիա, Սովետական պետության ղեկավար և ուղղություն տվող ուժը։ Նրա առջև ամենայն սրությամբ կանգնեցին նոր, սոցիալիստական պետություն ստեղծելու և սոցիալիզմ կառուցելու ամենաբարդ խնդիրները։ Ի. Վ. Ստալինը Վ. Ի. Լենինի մերձավորագույն օգնականն էր բանվորների և գյուղացիների՝ աշխարհում առաջին սոցիալիստական պետության կառուցման և ամրապնդման գործում։ Քաղաքացիական պատերազմի և ինտերվենցիայի դաժան տարիներին պարտիայի Կենտրոնական Կոմիտեն, Վ. Ի. Լենինը Ի. Վ. Ստալինին ուղարկում էին ռազմաճակատի ամենավտանգավոր հատվածները։ Իր երկաթյա կամքով և մասսաներին կազմակերպելու





հմտությամբ, իր զորավարական արվեստով Ի. Վ. Ստալինը հետևողականորեն հասնում էր քաղաքացիական պատերազմի ռազմաճակատներում սպիտակգվարդիականների և ինտերվենտների ջախջախման լենինյան պլանի իրականացմանը։

Պարտիան Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ հսկայական աշխատանք կատարեց սովետական ռեսպուբլիկաները մեկ միութենական պետության՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության մեջ միավորելու ուղղությամբ։ Պատմական այդ խնդրի իրականացման գործում շատ աշխատանք ներդրեց Ի. Վ. Ստալինը։ ՍՍՌՄ-ի կազմվելը հանդիսացավ բեկումնային պահ մեր երկրի ժողովուրդների պատմության մեջ, խոշոր ուղենիշ Սովետական իշխանության ամրապնդման գործում։ Սովետական Միությունը զարգացավ ու դարձավ միջազգային լուրջ ուժ, որը կարողանում է ներգործել միջազգային իրադրության վրա և փոխել այն՝ հօգուտ աշխատավորների։

***

Պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումից հետո, Կոմունիստական պարտիայի՝ որպես կառավարող պարտիայի առջև կանգնեցին նոր, սոցիալիստական հասարակարգ



կառուցելու վիթխարի խնդիրները։ Կոմունիստական պարտիայի առաջնորդ, Սովետական Կառավարության ղեկավար Վ. Ի. Լենինը մշակեց տնտեսապես հետամնաց Ռուսաստանը առաջավոր, հզոր սոցիալիստական տերություն դարձնելու՝ գիտականորեն հիմնավորված ծրագիրը։ Այդ ծրագիրը նախատեսում էր երկրի սոցիալիստական ինդուստրացում, ծանր արդյունաբերության բազմակողմանի զարգացում, ամբողջ ժողովրդական տնտեսության էլեկտրիֆիկացում, երկրի գյուղատնտեսությունը սոցիալիստական հիմունքներով վերափոխելու կոոպերատիվ պլանի կենսագործում, կուլտուրական ռևոլյուցիայի իրականացում։

Վ. Ի. Լենինի մահից հետո պարտիայի և ժողովրդի թշնամիները՝ տրոցկիստները, բուխարինականները, բուրժուական նացիոնալիստները, փորձում էին պարտիային ու երկիրը շեղել լենինյան ուղուց դեպի պրոլետարական ռևոլյուցիայի նվաճումները լիկվիդացնելու և կապիտալիստական կարգերը ռեստավրացիայի ենթարկելու ուղին։ Կոմունիստական պարտիան Ի. Վ. Ստալինի գլխավորած Կենտրոնական Կոմիտեի ղեկավարությամբ ջախջախեց դավաճաններին ու կապիտուլյանտներին, պաշտպանեց լենի-

նիզմը և վերցրեց մեր երկրում սոցիալիզմի կառուցման վճռական կուրս։ Մեր երկրում ծավալելով սոցիալիստական շինարարությունը, Կոմունիստական պարտիան ելնում էր հասարակության տնտեսական զարգացման օբյեկտիվ օրենքներից, հասարակության նյութական կյանքի զարգացման հասունացած պահանջմունքներից, ժողովրդի շահերից։ Ընդորում պարտիան հաստատ հիշում էր Վ. Ի. Լենինի ցուցումներն այն մասին, որ մեր երկրում կա այն ամենը, ինչ անհրաժեշտ է ու բավական՝ լիակատար սոցիալիստական հասարակարգ կառուցելու համար։

Վ. Ի. Լենինի մահից հետո երեսուն տարի մեր պարտիան Ի. Վ. Ստալինի ղեկավարությամբ սովետական ժողովրդին տանում էր լենինյան ուղիով, մեր երկրի սոցիալիստական վերափոխման լենինյան հանճարեղ պլանի իրականացման ուղիով։

Վ. Ի. Լենինի հավատարիմ աշակերտ և նրա մեծ գործի արժանավոր շարունակող Ի. Վ. Ստալինը կոմունիստներին և բոլոր սովետական մարդկանց միշտ կոչ էր անում ուսումնասիրել Վ. Ի. Լենինի աշխատությունները, հետևել նրա ուսմունքին, ապրել և աշխատել լենինաբար։

«Հիշեցե՛ք, սիրեցե՛ք, ուսումնասիրեցե՛ք



Իլյիչին, մեր ուսուցչին, մեր առաջնորդին,— գրել է Ի. Վ. Ստալինը։

Իլյիչի պես պայքարեցեք և հաղթեցեք ներքին ու արտաքին թշնամիներին։

Իլյիչի պես կառուցեք նոր կյանք, նոր կենցաղ, նոր կուլտուրա։

Երբեք մի՛ հրաժարվեք աշխատանքի մեջ փոքրից, որովհետև փոքրից է կառուցվում մեծը,— այս է Իլյիչի կարևոր պատգամներից մեկը» (Երկեր, հատ. 7, էջ 18)։

Իր ամբողջ գործունեության մեջ պարտիան ղեկավարվում է Մարքսի—Էնգելսի—Լենինի—Ստալինի մեծ ուսմունքով, Կոմունիստական պարտիայի անմահ ստեղծող և Սովետական պետության հիմնադիր Վլադիմիր Իլյիչ Լենինի իմաստուն պատգամներով։ Կատարելով Վ. Ի. Լենինի իմաստուն պատգամները, Կոմունիստական պարտիան Ի. Վ. Ստալինի գլխավորած Կենտրոնական Կոմիտեի ղեկավարությամբ հետևողականորեն կենսագործեց երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման քաղաքականությունը, իրագործեց կուլտուրական ռևոլյուցիա և մեր Հայրենիքի ժողովուրդներին հասցրեց սոցիալիզմի հաղթանակին։

Սոցիալիզմի կառուցման համար մղված

պայքարում Կոմունիստական պարտիան աճում և ամրապնդվում էր, բազմապատկում իր կապերը մասսաների հետ, ժողովրդի հետ։ Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն անդուլ հոգատարություն էր ցուցաբերում պարտիայի անդամի կոչումն ու նշանակությունը ամեն կերպ բարձրացնելու նկատմամբ։ «Մենք, կոմունիստներս,— ասել է Ի. Վ. Ստալինը,— հատուկ կերտվածքի մարդիկ ենք։ Մենք հատուկ նյութից ենք կերտված։ Մենք նրանք ենք, ովքեր պրոլետարական մեծ ստրատեգի բանակը, ընկեր Լենինի բանակն ենք կազմում։ Չկա ավելի բարձր բան, քան այդ բանակին պատկանելու պատիվը։ Չկա ավելի բարձր բան, քան այն պարտիայի անդամի կոչումը, որի հիմնադիրն ու ղեկավարը ընկեր Լենինն է»։ (Երկեր, հատ. 6, էջ 55)։

Կոմունիստական պարտիան համարձակորեն հաղթահարում էր իր ճանապարհին հանդիպած դժվարությունները, անխնա կերպով կոտրում թշնամիների դիմադրությունը և մշտապես պահպանում առաջատար ուժի իր դիրքը, սովետական ժողովրդին հաստատ ու վստահորեն առաջ էր տանում սոցիալիստական հասարակարգի կառուցման ուղիով։ Բազմաթիվ թշնամիների դեմ մղված պայ-



քարում պարտիան պաշտպանեց և ամրապնդեց իր շարքերի լենինյան միասնությունը, է՛լ ավելի համախմբվեց իր Կենտրոնական Կոմիտեի շուրջը։ Պարտիական շարքերի միաձույլ միասնությունը եղել է, կա ու կլինի պարտիայի ամրության ու անպարտելիության վճռական պայմանը։ Կոմունիստական պարտիան իր պատմական մեծ կոչումն ու դերը հաջողությամբ է կատարում, որովհետև նա ներկայացնում է համախոհների միաձույլ կոլեկտիվ, որը զոդված է կամքի միասնությամբ, գործողությունների միասնությամբ, կարգապահության միասնությամբ։

ՍՍՌՄ-ում սոցիալիզմի հաղթանակը Լենինի իմաստուն պատգամների կատարման արդյունքն է, Կոմունիստական պարտիայի կազմակերպող և ուղղություն տվող վիթխարի գործունեության հոյակապ արդյունքը, բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի ոգեշունչ հերոսական աշխատանքի պտուղը։

Ընդհանրացնելով ՍՍՌՄ-ում սոցիալիստական շինարարության փորձը և ժամանակակից միջազգային ազատագրական շարժման փորձը, Ի. Վ. Ստալինը ստեղծագործաբար զարգացրեց մարքսիստական-լենինյան

ուսմունքը պատմական նոր պայմանների համեմատ և մի շարք հարցերում նոր դրույթներով հարստացրեց ռևոլյուցիոն թեորիան։ Ի. Վ. Ստալինը անդուլ կերպով աշխատում էր Սովետական պետության ամրապնդման վրա։ Նա նշում էր, որ սոցիալիստական պետության ամրությունն ու հզորությունը մեր երկրում կոմունիզմի հաջող կառուցման կարևորագույն պայմանն է։

Սովետական պետության ամրության և անպարտելիության աղբյուրը բանվոր դասակարգի ու գյուղացիության անխորտակելի դաշինքն է։ Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի մեջ տեսնում էին պրոլետարիատի դիկտատուրայի բարձրագույն սկզբունքը։ Կոմունիստական պարտիան իր առաջնահերթ պարտականությունն է համարում անդուլ կերպով ամրապնդել բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքը՝ մեր Հայրենիքի հզորության հիմքը։

Սովետական բազմազգ պետության հիմքերի հիմքը՝ ժողովուրդների բարեկամությունն է. Վ. Ի. Լենինը ստեղծեց ժողովուրդների իրավահավասարության և բարեկամության իդեոլոգիան, մշակեց ազգային հարցում պարտիայի կուռ թեորիան, ծրագիրն



ու տակտիկան։ Ազգային հարցի վերաբերյալ լենինյան ծրագրային դրույթները իրենց հետագա զարգացումն ստացան Ի. Վ. Ստալինի աշխատություններում, պարտիայի որոշումներում։ Իրագործելով լենինյան-ստալինյան ազգային քաղաքականությունը, Կոմունիստական պարտիան մեր Հայրենիքի բոլոր ժողովուրդներին համախմբեց միասնական եղբայրական ընտանիքի մեջ՝ մեծ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության մեջ։ Մեր երկրի ժողովուրդների բարեկամությունը դարձել է սովետական հասարակության զարգացման հզոր շարժիչ ուժը։ ՍՍՌՄ ժողովուրդների անխախտ բարեկամության ամրապնդման վրա անդուլ կերպով աշխատում էր Ի. Վ. Ստալինը։ Կոմունիստական պարտիան աչքի լույսի պես պահպանում է մեր երկրի ժողովուրդների բարեկամությունը, աշխատավորներին անխոնջ կերպով դաստիարակում է ժողովուրդների բարեկամության ու եղբայրության իդեոլոգիայի ոգով, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով։

Կոմունիստական պարտիան միշտ էլ հսկայական ուշադրություն է նվիրել մեր Հայրենիքի պաշտպանունակության ամրապնդելու գործին։ Հայրենական Մեծ պատերազմում

Կոմունիստական պարտիան հանդես եկավ որպես սովետական ժողովրդի ու նրա Զինված Ուժերի ոգեշնչողն ու մարտական ղեկավարը։ Ծանր փորձությունների օրերին նա գործում էր որպես միասնական մարտական կազմակերպություն, որն իր շարքերում չգիտի երերումներ ու տարաձայնություններ։ Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և Սովետական կառավարության որոշմամբ Սովետական պետության Զինված Ուժերի գլուխ կանգնեցվեց Լենինի գործի մեծ շարունակող Ի. Վ. Ստալինը։ Պարտիայի Կենտկոմը անմիջականորեն ռազմական աշխատանքի ուղարկեց Ն. Ա. Բուլգանինին, Ա. Ա. Ժդանովին, Ա. Ս. Շչերբակովին, Ն. Ս. Խրուշչևին և Կենտկոմի մյուս անդամներին։ Մեր Սոցիալիստական Հայրենիքի պատվի և անկախության համար մղված դաժան ճակատամարտերում Կոմունիստական պարտիան է՛լ ավելի հարազատ դարձավ ժողովրդին։ Պատերազմը նորից ցուցադրեց սովետական հասարակական ու պետական կարգի կենսական մեծ ուժը, պարտիայի քաղաքականության իմաստությունն ու հեռատեսությունը։

Հիտլերյան Գերմանիայի և իմպերիալիստական Յապոնիայի ջախջախման հետևանքով իմպերիալիստական սիստեմից անջատ-



վեցին Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներ։ Կազմվեց խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի հզոր լագերը ՍՍՌՄ-ի գլխավորությամբ։ Այդ լագերում եղբայրական սերտ միասնությամբ սովետական ժողովրդի հետ միասին առաջ են ընթանում չին մեծ ժողովուրդը, Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Բուլղարիայի, Հունգարիայի, Ռումինիայի, Ալբանիայի, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայի եղբայրական ժողովուրդները։ Այդ լագերում ընթանում են հերոսական կորեական ժողովուրդը և Վյետնամի աշխատավորները, որոնք պայքարում են իրենց ազգային անկախության և ազատության համար։

***

Ստեղծագործաբար զարգացնելով գիտական կոմունիզմի թեորիան, Վ. Ի. Լենինը մշակեց ՍՍՌՄ-ում կոմունիստական հասարակարգ կառուցելու գիտական ծրագիրը։ Լենինյան հանճարի անմահ ստեղծագործություններում տրված են դեպի կոմունիզմը սովետական հասարակության առաջընթացի ուղիների վերաբերյալ հիմնական սկզբունքային, թեորիական ցուցումներ։ Կազմակերպելով կոմունիստական շինարարությու-

նը, մեր պարտիան ելնում է լենինյան այդ ծրագրային դրույթներից, որոնք հետագա զարգացում ստացան Ի. Վ. Ստալինի աշխատություններում և պարտիայի որոշումներում։

Ղեկավարվելով լենինիզմի ուսմունքով, Կոմունիստական պարտիան մշակեց գիտականորեն հիմնավորված և պայքարի տասնամյակներով ստուգված քաղաքականություն, որն արտահայտում է հասարակության նյութական կյանքի զարգացման պահանջմունքներն ու ժողովրդի արմատական շահերը։

Սովետական ժողովուրդը անսահման վստահություն է տածում և ջերմ սիրով է տոգորված իր Կոմունիստական պարտիայի նկատմամբ, քանի որ նա գիտի, որ պարտիայի ամբողջ գործունեության բարձրագույն օրենքը ժողովրդի շահերին ծառայելն է։ Մեր երկրի աշխատավորները անշեղորեն հետևում են Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության քաղաքականությանը, որն ապահովում է մեր սոցիալիստական Հայրենիքի հետագա ծաղկումը։

Պարտիան ամեն կերպ զարգացնում է սոցիալիստական էկոնոմիկայի հիմքերի հիմքը կազմող ծանր արդյունաբերությունը։ Ծանր



արդյունաբերության զարգացման գործում ձեռք բերված հաջողությունները պայմաններ նախապատրաստեցին ժողովրդական սպառման առարկաների արտադրության շեշտակի վերելքի համար։ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը նախատեսել են թեթև ու սննդի արդյունաբերության արագ զարգացման լայն ծրագիր, այն հաշվով, որ երկու—երեք տարվա ընթացքում զգալիորեն բարձրացվի երկրի բնակչության ապահովվածությունը մասսայական սպառման պարենային և արդյունաբերական ապրանքներով։ Այդ խնդիրների պրակտիկ լուծումը կոմունիստական շինարարության ծրագրի բաղկացուցիչ մասն է։

Պարտիան լայնորեն բացահայտում է մեր արդյունաբերության ընդերքում եղած ներքին ռեզերվները՝ ժողովրդական տնտեսության զարգացման պլանների առավել հաջող կատարման համար։ Պարտիան աշխատավորներին մոբիլիզացնում է՝ վերացնելու ձեռնարկությունների աշխատանքում եղած թերությունները, ծավալելու սոցիալիստական մրցությունը մեր արդյունաբերության և տրանսպորտի առջև կանգնած նոր խնդիրների լուծման համար, աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման, արտա-

դրանքի ինքնարժեքի իջեցման ու որակի բարձրացման համար, մեր բոլոր միջոցներն ու հնարավորությունները խնայողաբար և և խելացիորեն օգտագործելու համար։

Մեծ հաջողություններ է ձեռք բերել նաև սոցիալիստական գյուղատնտեսությունը։ Կոլտնտեսային կարգը ապացուցել է իր հսկայական կենսական ուժը և իր արմատական առավելությունները ամեն մի մանրավոր-կապիտալիստական գյուղատնտեսական արտադրության հանդեպ։ Սակայն պարտիան չի կարող բավարարվել այդ հաջողություններով։ Նա ելնում է աշխատավորների նյութական հարաճուն պահանջմունքներից։ Առանց գյուղատնտեսության հետագա շեշտակի վերելքի, չի կարելի լրիվ չափով ապահովել պարենի առատություն և հումք մատակարարել մեր արագ աճող թեթև ու սննդի արդյունաբերությանը։ ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշման մեջ և գյուղատնտեսության հարցերի վերաբերյալ պարտիայի ու կառավարության հաջորդ որոշումներում մշակված է սոցիալիստական գյուղատնտեսության բոլոր ճյուղերի, առաջին հերթին անասնաբուծության, կարտոֆիլի ու բանջարեղենի արտադրության արագ զարգացման մարտական, կոնկրետ ծրագիրը։



Կոմունիստական պարտիան բացառիկ ուշադրություն է նվիրում հացահատիկային տնտեսության՝ որպես ամբողջ գյուղատնտեսական արտադրության հիմքի, բազմակողմանի զարգացմանը։ Պարտիայի քաղաքականությունն ուղղված է այն նպատակին, որ օգտագործվեն բոլոր ռեզերվներն ու հնարավորությունները հացահատիկի արտադրությունն ամեն կերպ ուժեղացնելու համար։ Հացահատիկի բերքատվությունը բարձրացնելու հետ մեկտեղ պարտիան ձգտում է հասնել միլիոնավոր հեկտար խոպան ու խամ հողերի յուրացմանը, հատկապես Սիբիրի, Ուրալի, Պովոլժյեի շրջաններում։ Պարտիայի կոչով սովետական հազարավոր հայրենասերներ մեկնում են այդ շրջանները՝ պետական մեծ խնդիրը կատարելու համար։

Սովետական մարդիկ իրենց կենսափորձով տեսնում են, որ պարտիայի քաղաքականությունն ուղղված է սովետական ժողովրդի բարեկեցության հետագա անշեղ բարձրացման, նրա նյութական և կուլտուրական հարաճուն պահանջմունքների լրիվ բավարարման նպատակին։ Դա երևում է այն բանից, որ Սովետական պետությունը հսկայական միջոցներ է հատկացնում բնակարանային շինարարությանը, ժողովրդական կրթությա-





նը, առողջապահությանը, դա իր արտացոլումն է գտնում նաև մասսայական սպառման ապրանքների գները սիստեմատիկաբար իջեցնելու քաղաքականության մեջ և այլն։

Պարտիան, անշեղորեն իրագործելով 19-րդ համագումարի որոշումները, ամրապնդում է իր շարքերի միասնությունն ու մարտունակությունը, ամեն կերպ զարգացնում է ներպարտիական դեմոկրատիան, ինքնաքննադատությունը և հատկապես ներքևից եկող քննադատությունը, հետևողականորեն ղեկավարվում է Լենինի մշակած՝ պարտիական կյանքի նորմաներով և պարտիական ղեկավարության սկզբունքներով։ Պարտիայի մասին լենինյան ուսմունքի մեջ կարևորագույն սկզբունքներից մեկը պարտիական կոլեկտիվ ղեկավարության սկզբունքն է։ Դեռևս նախառևոլյուցիոն տարիներին Վ. Ի. Լենինը պարտիայի Կենտրոնական Կոմիտեն անվանում էր ղեկավարների կոլեկտիվ, պարտիայի սկզբունքների պահպանող ու մեկնաբանող։ «Պարտիայի սկզբունքները համագումարից համագումար պահպանում է և դրանք մեկնաբանում Կենտրոնական Կոմիտեն»,— նշել է Լենինը։ Նա միշտ պնդում էր, որ պահպանվեն պարտիայի կանոնադրությամբ



նախատեսված՝ պարտիական կյանքի հաստատուն նորմաները։

Կենտրոնական Կոմիտեի կոլեկտիվ փորձը և կոլեկտիվ իմաստությունը, որոնք հենվում են Մարքսի—Էնգելսի—Լենինի—Ստալինի թեորիայի գիտական հիմքի վրա, ժողովրդական մասսաների ստեղծագործական եռանդի և ինքնագործունեության վրա, ապահովում են պարտիայի և երկրի ղեկավարման ճշտությունը։

Պարտիայի քաղաքականությունն ուղղված է խաղաղության և ժողովուրդների անվտանգության պատվարի՝ Սովետական պետության հզորության հետագա ամրապնդման նպատակին։ Սովետական պետությունը հըսկայական վճռականությամբ ու հաստատակամությամբ պայքարում է ժողովուրդների միջև կայուն խաղաղության համար, նոր պատերազմը կանխելու, դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերն ամրապնդելու համար։

Պարտիան հետևողականորեն վարում է Սովետական պետության լենինյան արտաքին քաղաքականություն, ժողովուրդների միջև խաղաղության քաղաքականություն, որը հիմնված է երկու սիստեմների՝ կապիտալիստական և սոցիալիստական սիստեմների, գոյակցության ու խաղաղ մրցության վերա-

թերյալ լենինիզմի դրույթի վրա։ «Երկու սիստեմների համագործակցության միտքը,— ասել է Ի. Վ. Ստալինը,— առաջին անգամ հայտնել է Լենինը։ Լենինը մեր ուսուցիչն է, իսկ մենք, սովետական մարդիկ՝ Լենինի աշակերտները։ Մենք երբեք չենք շեղվել և չենք շեղվի Լենինի ցուցումներից» («Պրավդա», 8 մայիսի, 1947 թվականի)։

Աշալուրջ կերպով կանգնած լինելով ժողովրդի շահերի, սովետական մարդկանց խաղաղ աշխատանքի պաշտպանության դիրքերում, Կոմունիստական պարտիան հաշվի է առնում, որ արտասահմանում կան ռեակցիոն իմպերիալիստական ուժեր, որոնք ձգտում են սրել և ուժեղացնել միջազգային լարվածությունը, սանձազերծել նոր պատերազմ։ Ուստի, հաստատ ու հետևողականորեն վարելով խաղաղության քաղաքականություն, պարտիան անհրաժեշտ է համարում անդուլ կերպով կատարելագործել և ամրապնդել Սովետական Միության Զինված Ուժերը, բարձրացնել սովետական ժողովրդի զգոնությունը ընդդեմ Սովետական պետության թշնամիների բոլոր և ամեն տեսակ մեքենայությունների։

Հենվելով սովետական սոցիալիստական



կարգի մեծ առավելությունների վրա, Կոմունիստական պարտիան Լենինի—Ստալինի դրոշով հաստատ ու վստահորեն երկիրը տանում է դեպի կոմունիզմի լիակատար հաղթանակը։ Սովետական մարդիկ խորապես համոզված են, որ իրենց հարազատ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ կհասնեն մեր երկրում կոմունիզմի կառուցման ծրագրի հաղթական իրականացմանը։

---

# ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐԸ

Մ. ՄԵԼԻՔՅԱՆ

ՀԿՊ Երևանի Քաղկոմի դպրոցական բաժնի վարիչ

*Այս տարի Կանանց Միջազգային օրը՝ Մարտի 8-ը, մեր երկիրը դիմավորում է ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստման պայմաններում, երբ միլիոնավոր ընտրողներ հայրենասիրական բուռն խանդավառությամբ, Կոմունիստական պարտիայի կոչով իրենց ձայնն են տալու կոմունիստների և անպարտիականների ժողովրդական բլոկի թեկնածուների օգտին։ Կանանց Միջազգային օրը սովետական ժողովուրդը նշում է մեր երկրի աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման, սովետական Հայրենիքի ուժերի ծաղկման շրջանում, էկոնոմիկայի և կուլտուրայի հզոր վերելքի պայմաններում։*

*Կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարությամբ, սովետական մարդիկ մեծ հաղթանակներ են տանում կոմունիստական*



*շինարարության բոլոր ճակատներում։ ՍՍՌՄ արդյունաբերական արտադրության ծավալը արդեն 1953 թվականին երկու և կես անգամ գերազանցեց նախապատերազմյան 1940 թվականի մակարդակը։*

*Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը նախատեսել են լայն ծրագիր՝ թեթև և սննդի արդյունաբերության արագատեմպ զարգացման համար, այն հաշվով, որ երկու—երեք տարում մեծ չափերով բարձրացվի երկրի բնակչության ապահովվածությունը մասսայական սպառման պարենային և արդյունաբերական ապրանքներով։ Միայն 1953 թվականին շարք են մտել ժողովրդական սպառման ապրանքների արտադրության 300 նոր ձեռնարկություններ։*

*Ժողովրդական սպառման առարկաների արտադրության շեշտակի վերելքն ապահովելու համար ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Սեպտեմբերյան պլենումը հոյակապ միջոցառումներ է մշակել ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման մասին։*

*Հարազատ Կոմունիստական պարտիան խնդիր է դրել հասնել գյուղատնտեսության բոլոր ճյուղերի շեշտակի վերելքի և երկու—երեք տարվա ընթացքում խիստ բարձրացնել մեր երկրի ամբողջ բնակչության ապա-*

հովվածությունը պարենային ապրանքներով և դրա հետ մեկտեղ կոլտնտեսային գյուղացիության ամբողջ մասսայի համար ապահովել նյութական բարեկեցության առավել բարձր մակարդակ։

Այժմ տղամարդկանց հետ համահավասար, կանայք նույնպես պայքարում են ներկա էտապում ամենակենսական և կարևորագույն ժողովրդա-տնտեսական այդ խնդիրները անշեղորեն կենսագործելու համար, գյուղատնտեսության արագ վերելքն ու բազմակողմանի զարգացումն ապահովելու համար։

ՍՄԿՊ Կենտկոմը մարտի 8-ի Կանանց Միջազգային օրվա առթիվ ընդունած որոշման մեջ հաստատ համոզմունք է հայտնում, որ սովետական երկրի կանայք՝ բանվորուհիներն ու կոլտնտեսուհիները, գիտության և կուլտուրայի գործիչները, արդյունաբերության և գյուղատնտեսության մասնագետները, առևտրի աշխատողները, սովետական ծառայողներն իրենց ակտիվ, ստեղծագործական աշխատանքով այսուհետև կբազմապատկեն մեր Հայրենիքի փառքն ու հարստությունը, նրա ուժն ու հզորությունը, կանգնած կլինեն մեր երկրում կոմունիզմի կառուցման համար մարտնչողների առաջին շարքերում։



Հարազատ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության կողմից դաստիարակված մեր երկրի կանայք սխրագործություններ են կատարում կոմունիստական շինարարության բոլոր ճակատամասերում։ Իր անկախության համար, կոմունիստական հասարակարգի կառուցման համար մեր ժողովրդի մղած մեծ պայքարի ընթացքում կազմավորվեց սովետական կնոջ կայուն, աննկուն, հարուստ գծերով օժտված բնավորությունը։ Սովետական կանայք տղամարդկանց հետ համահավասար՝ մասնակցում են պետության կառավարմանը։ 1950 թվականին ընտրված ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատների թվում կան 280 կանայք։ Դա շատ ավելի է, քան բուրժուական երկրների բոլոր պառլամենտներում եղած կանանց թիվը՝ միասին վերցրած։ 2.209 կանայք հանդիսանում են միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների դեպուտատներ։ Ավելի քան կես միլիոն կանայք ընտրվել են աշխատավորների դեպուտատների տեղական Սովետներում։ Ներկայումս շատ կանայք առաջադրված են ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածուներ։ Հայկական ՍՍՌ-ից առաջադրված 30 թեկնածուներից 7-ը կանայք

ևն, որոնց թվին են պատկանում Ստալինյան մրցանակի լաուրեատ, Ապակետարայի գործարանի դիրեկտոր Մարիա Բաբաջանյանը, ռեսպուբլիկայի կոմունալ տնտեսության մինիստր Նոմիկ Թովսիկյանը, պրոֆմիութենական աշխատող Աշխեն Իշխանյանը, վաստակավոր մանկավարժ Վիկտորիա Դայանը, արտադրության նորարար Աստղիկ Ատաքելյանը և ուրիշները։ 147 կանայք մասնակցում էին պարտիայի 19-րդ համագումարի աշխատանքին։ Հայաստանի Կոմունիստական պարտիայի 17-րդ համագումարի դելեգատների թվում կային 66 կին։

Ոչ մի պետություն այնքան բան չի արել կանանց համար, որքան մեր սոցիալիստական պետությունը։ Սովետական կինը աշխատանքային բարձր որակավորում է ձեռք բերել ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։ Կին կադրերի դաստիարակման ու պատրաստման գործում պարտիայի և կառավարության ցուցաբերած անդուլ հոգատարության շնորհիվ կանայք կազմում են բարձրագույն կրթություն ունեցող բոլոր մասնագետների մոտավորապես կեսը։ Ցարական Ռուսաստանում աննշան թիվ էին կազմում կին ինժեներներն ու տեխնիկները, իսկ ներկայումս մեր երկրի



գիտական, ուսումնական և կուլտուր-լուսավորական հիմնարկներում աշխատում են ավելի քան երկու միլիոն յոթ հարյուր հազար կանայք և ավելի քան երկու միլիոն կանայք աշխատում են առողջապահության և ֆիզկուլտուրայի հիմնարկներում։

Սովետական Միությունում կան մոտ 60 հազար կին գիտական աշխատողներ։ Նրանք գործուն մասնակցություն են հանդես բերում գիտական նորանոր պրոբլեմների մշակմանը և գիտական հայտնագործություններին։ Միության մեջ միայն 1952 թվականին 51 կին ստացել է գիտությունների դոկտորի աստիճան, 383 կին՝ պրոֆեսորի և դոցենտի կոչում, 1.547 կին՝ գիտությունների թեկնածուի աստիճան։ Գնալով ավելի ու ավելի է աճում կին փիլիսոփաների, գրողների, արտիստների, քանդակագործների, նկարիչների, պատմաբանների թիվը։ Մեր երկրում լայնորեն հայտնի են կին գիտնականների անունները, որոնց թվին են պատկանում քիմիկոս գիտնական Ն. Լուժնայան, ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ Պ. Կոշինան, Անդրբևեռի բնախույզ երկրաբան պրոֆ. Օ. Վորոբյովան, բիոլոգիական գիտությունների դոկտոր Դ. Բաբա-

յանը, քիմիական գիտությունների դոկտոր Ա. Բաբայանը և շատ ուրիշներ։

Սովետական պետությունը բարձր է գնահատում կին հայրենասերների անձնվեր աշխատանքը։ Երկու հազար 346 կանանց շնորհված է Սովետական Միության Հերոսի և Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչումներ, 741 կանայք արժանացել են Ստալինյան մրցանակի, մոտավորապես 900 հազար կանայք պարգևատրված են ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով։

Սովետական կանանց համար ստեղծված են բոլոր պայմանները ուրախ ու երջանիկ ապրելու համար։ Սովետական պետությունը ստեղծել է մանկական բազմաթիվ օջախներ՝ մանկական կլինիկաներ, սանատորիաներ, մանկապարտեզներ և մանկահրապարակներ։ Միայն Հայկական ՍՍՌ-ում 1953 թվականի բյուջեով առողջապահությանը հատկացվեց 177 միլիոն 663 հազար ռուբլի։ Ամեն տարի վիթխարի գումարներ է ծախսվում մանկական սանատորիաների, մանկապարտեզների, մանկամսուրների պահպանման և ընդարձակման համար։

Սովետական երկրում մեծ հարգանք է վայելում մայրը։ «Հերոսուհի մայր» բարձր կոչում է շնորհվել 41 հազար բազմազավակ



մայրերի, 4 միլիոն կանայք պարգևատրված են «Մայրական փառք» շքանշանով և «Մայրության մեդալով»։

Միայն մեր ռեսպուբլիկայում 826 մայրեր պարգևատրված են «Հերոսուհի մայր» շքանշանով, իսկ 71.796 կանայք՝ «Մայրական փառք» շքանշանով և «Մայրության մեդալով»։

Սովետական պետությունը մշտական հոգատարություն է ցուցաբերում բազմազավակ և միայնակ մայրերի նկատմամբ, նրանց ցույց տալով նյութական օգնություն։ 1953 թվականին այդ նպատակներով ծախսվել է ավելի քան վեց և կես միլիարդ ռուբլի։ 1944 թվականի հուլիսի 8-ի օրենքի հիման վրա մեր ռեսպուբլիկայում բազմազավակ և միայնակ մայրերին վճարվել է 372 միլիոն 537 հազար ռուբլի նպաստ։

Երևանի կոնսերվի գործարանի առաջավոր բանվորուհի Էրիկ Շահինյանը ո՛չ միայն ստախանովական է, այլև 10 երեխաների մայր։ Երևան քաղաքի բնակչուհի բազմազավակ մայր Սիրանուշ Վարոսյանը 13 երեխաների համար պետությունից ստացել է 60 հազար ռուբլի նպաստ։ Կրասնոսելսկի բնակչուհի Անիկ Ջահինյանը ստացել է 46 հազար ռուբլի, Ստեփանավանի շրջանից՝ Վերա

Կիրակոսյանն ստացել է 35.500 ռուբլի և այլն։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան հասարակական-քաղաքական գործունեության լայն ասպարեզ բացեց մեր երկրի նախկինում ճնշված, ճորտ ու ստրուկ վիճակում գտնվող կանանց համար։ Երեկվա մոռացված, հետամնաց, անգրագետ հայ կինը այսօր ակտիվորեն մասնակցում է երկրի կառավարմանը։ Ռեսպուբլիկայում կան 2 կին մինիստրներ, մինիստրների 4 տեղակալներ, կոլտնտեսության 8 նախագահներ, 157 ֆերմայի վարիչներ։ Առողջապահության և ֆիզկուլտուրայի բնագավառում աշխատողների 78,4 տոկոսը կանայք են։ Ռեսպուբլիկայում Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչման արժանացածների թվի կեսից ավելին նույնպես կանայք են։ Հոկտեմբերյանի շրջանի Բամբակաշատ գյուղի Օրջոնիկիձեի անվան կոլտնտեսությունում կան Սոցիալիստական Աշխատանքի 7 հերոսներ, որոնցից 5-ը կանայք են։

Վ. Ի. Լենինը ազատության կոչ էր անում ո՛չ միայն Սովետական Միության կանանց, այլև նրանց քույրերին ամբողջ աշխարհում։ Աշխարհում առաջին սոցիալիստական պետության կանանց հերոսական օրինակը ո-



գեշնչման աղբյուր հանդիսացավ Արևելյան և Հարավ-Արևելյան Եվրոպայի ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավոր կանանց համար։ Բուլղարիայի, Ռումինիայի, Հունգարիայի, Չեխոսլովակիայի, Լեհաստանի, Ալբանիայի պատմության մեջ առաջին անգամ կանայք դարձան հասարակության իրավահավասար անդամներ, նոր կյանքի ակտիվ կառուցողներ։ Մեծ փոփոխություններ կատարվեցին կանանց դրության մեջ Չինաստանում։ Տղամարդկանց հետ համահավասար՝ նրանք սկսեցին կառավարել իրենց հայրենիքը։ Կենտրոնական ժողովրդական կառավարության օրգաններում ղեկավար պոստեր են գրավում 60 կանայք։ Չինական ժողովրդական ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ կանանց թիվը վերջին երկու տարում աճեց, հասնելով 74 տոկոսի։ Բուլղարիայում կանայք կազմում են արդյունաբերության բոլոր աշխատողների 49 տոկոսը։

Կապիտալիստական աշխարհում կանայք առաջվա նման իրավազուրկ են ու ճնշված։ Կանանց ամեն կերպ հեռու են պահում հասարակական ու պետական կյանքից։ Բանվորուհիները զրկված են ընտրական իրավունքից։ ԱՄՆ-ում, Անգլիայում, Ֆրանսիա-

յում տղամարդկանց համահավասար կատարած աշխատանքի համար կանայք 30—40 տոկոսով ցածր աշխատավարձ են ստանում: Կանանց դրությունն է՛լ ավելի ծանր է գաղութային և կախյալ երկրներում, Մարոկկոյում, Մալայայում, Բիրմայում, Իրանում, Թյուրքիայում, Եգիպտոսում և մյուս երկրներում, որտեղ կանայք ենթարկվում են դաժան շահագործման: 30 կապիտալիստական երկրներում կանայք զրկված են ընտրական ձայնից:

Ընդլայնվում է սովետական կանանց բարեկամությունը ամբողջ աշխարհի աշխատավոր կանանց հետ: Կանանց միջազգային շարժման ականավոր պարագլուխներից մեկը՝ Դոլորես Իբարուրին ասել է. «Սովետական կանայք ամբողջ աշխարհի կանանց հպարտությունն են և օրինակ՝ նրանց համար»:

Ամբողջ աշխարհի աշխատավոր կանայք ավելի ու ավելի են համախմբվում իրենց միջազգային կազմակերպության շուրջը: Կանանց Միջազգային Դեմոկրատական Ֆեդերացիայի մեջ միավորված են 140 միլիոնից ավելի կանայք, որոնք ակտիվ կերպով հանդես են գալիս ընդդեմ պատերազմի, պայքա-



րում են խաղաղության և դեմոկրատիայի համար: Միլիոնավոր կանայք մինչև այժմ սգում են իրենց ամուսինների ու որդիների, հայրերի ու եղբայրների համար, որոնք զոհ գնացին Ամերիկայի, Անգլիայի, Ֆրանսիայի և Գերմանիայի իմպերիալիստների կողմից ժողովուրդների վզին փաթաթված համաշխարհային երկու հանցավոր պատերազմում: Ուստի նրանք նզովում են նոր պատերազմի հրձիգներին:

Սովետական կանայք, սովետական ամբողջ ժողովրդի հետ միասին, ընթանում են ամբողջ աշխարհի խաղաղության և դեմոկրատիայի համար մղվող պայքարի ավանգարդում: Սովետական կանանց խաղաղության կամքն իր մարմնավորումն է գտնում կոմունիստական շինարարության բոլոր ճակատամասերում կատարվող խաղաղ ստեղծագործական աշխատանքի մեջ:

Մեծ Կոմունիստական պարտիայի նկատմամբ խորին երախտագիտության զգացմունքներով լի՝ սովետական կանայք այսուհետև ևս անձնվիրաբար կպայքարեն մեր Հայրենիքի հզորության ամրապնդման համար, պարտիայի և կառավարության բոլոր որոշումների կատարման համար, ամբողջ

աշխարհում խաղաղության և դեմոկրատիայի հաղթանակի համար։

Աշխարհի բոլոր ծայրերից հնչում է մայրերի ձայնը ընդդեմ նոր պատերազմի հրձիգների։ Աշխարհի կանայք հայտարարում են՝

«Մեզ հարկավոր են ստադիոններ ու դպրոցներ, և ոչ թե զորանոցներ»։

«Մեզ հարկավոր են տներ, և ոչ թե համակենտրոնացման ճամբարներ»։

«Բավ է ինչքան զուրկ ու աղքատ մնացինք։ Թույլ չենք տա, որ զոհվեն մեր երեխաները։ Մենք ուզում ենք նրանց ժպիտը տեսնել, ոչ թե արտասուքը»։

«Հանուն խաղաղության, հանուն ժողովուրդների բարգավաճման՝ ամբողջ աշխարհում»։

---



# ԱԳԻՏՊՈՒՆԿՏՆ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՕՐԵՐԻՆ

### Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

*Ընտրական տեղամասերում բացված շատ ագիտպունկտեր պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ քաղաքական-մասսայական ամենօրյա աշխատանք են կատարում բնակչության մեջ և օկրուգային ու տեղամասային ընտրական հանձնաժողովներին օգնություն ցույց տալիս ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները լավագույն կերպով նախապատրաստելու և քաղաքական բարձր մակարդակով անցկացնելու համար։*

*Այդպիսի ագիտպունկտերից է Կիրովականի շրջանի Ժդանով գյուղում կազմակերպված № 42 ընտրական տեղամասի ագիտպունկտը, որտեղ ագիտատորները ամենօրյա ագիտացիա են մղում դեպուտատության թեկնածուների օգտին, բոլոր ընտրողներին պարզաբանում են նրանց աշխատան-*

քային գործունեությունը և այն արժանիքները, որոնց համար նրանք վայելում են այդպիսի մեծ վստահություն:

Ագիտպունկտը զարդարված է պլակատներով, լոզունգներով, նկարներով և ունի անհրաժեշտ կահավորում: Աչքի ընկնող տեղերում ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների Կանոնադրությունից, ՍՍՌՄ Կոնստիտուցիայից և ընտրողներին ուղղված ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Դիմումից փակցված են գեղարվեստորեն ձևավորված քաղվածքներ, որոնք գրավում են բոլորի ուշադրությունը: Այստեղ կան նաև ամենօրյա թարմ թերթեր, ամսագրեր և ընտրություններին վերաբերող գրականություն, որից օգտվում են շատ ու շատ ընտրողներ:

Ագիտպունկտի աշխատանքը ղեկավարում է գյուղի դպրոցի ուսումնական մասի վարիչ ընկ. Երանուհի Հովհաննիսյանը: Ունենալով պրոպագանդիստական և ագիտացիոն աշխատանքի կազմակերպման անհրաժեշտ փորձ, նա քաղաքականապես պատրաստված ակտիվիստների, գյուղական ինտելիգենցիայի միջոցով ագիտպունկտում դասախոսություններ է կազմակերպել ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների, ՍՍՌՄ Կոնստիտուցիայի, Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական



Կոմիտեի Սեպտեմբերյան պլենումի որոշման, միջազգային դրության և այլ ակտուալ թեմաների մասին:

ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստման ընթացքում ագիտպունկտը դիֆերենցված աշխատանք է կատարում ընտրողների մեջ: Այսպես, օրինակ, ընտրողների հաշվառման և նրանց ցուցակը կազմելու ժամանակ պարզվեց, որ գյուղում կան 19 երիտասարդներ, որոնք առաջին անգամն են մասնակցում ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրություններին: Գյուղական Սովետի և պարտիական կազմակերպության օգնությամբ ագիտպունկտում նրանց համար կազմակերպվեց առանձին ժողով, ուր զեկուցում տրվեց «Սովետական ընտրական սիստեմը» թեմայով: Զեկուցման ընթացքում կոնկրետ փաստերով ցույց տրվեց սովետական ընտրական սիստեմի ամենադեմոկրատական բնույթը և այն մեծ իրավունքները, որ վայելում են մեր մեծ Հայրենիքի բոլոր քաղաքացիները:

ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստման ու անցկացման ժամանակաշրջանում ագիտացիոն աշխատանքի ծավալման նպատակով գյուղում կազմակերպված է 23 թաղային խմբակ:

խմբակներում, կոլտնտեսության դաշտավարական բրիգադներում և անասնապահական ֆերմաներում աշխատում են 46 ագիտատորներ, որոնցից շատերին ագիտպունկտը օգնում է ընտրական գրականությամբ, ամսագրերով, թերթերով և տեղական կյանքին վերաբերող համապատասխան նյութերով, որոնք ցույց են տալիս Սովետական իշխանության տարիներին շրջանի ու գյուղի ձեռք բերած հաջողությունները։ Բացի այդ, ագիտկոլեկտիվի ղեկավարի և ագիտպունկտի վարիչի նախաձեռնությամբ ագիտպունկտում պարբերաբար տեղի են ունենում սեմինար պարապմունքներ, որոնց ընթացքում ագիտատորներին տրվում է մեթոդական լուրջ օգնություն։ Արդեն 8 սեմինար պարապմունք է տեղի ունեցել՝ նվիրված ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների Կանոնադրության, ՍՍՌՄ Կոնստիտուցիայի հիմունքների և ընտրողներին ուղղված ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Դիմումի մասսայականացմանը։ Ագիտատորներից Ս. Ղամբարյանը, Է. Մարգարյանը, Մ. Մարկոսյանը, Ա. Ղարաբեկյանը և մյուսները մասսայականացնելով ընտրողներին ուղղված ՍՄԿՊ Կենտկոմի Դիմումը, գյուղի բոլոր ընտրողներին նախապատրաստում են մարտի 14-ին



մասնակցելու Գերագույն Սովետի ընտրություններին և միահամուռ կերպով ձայն տալու կոմունիստների ու անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին։

Ագիտպունկտը դարձել է գյուղում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքի կենտրոնը, այժմ առանձնահատուկ ուշադրություն է դարձվում ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների Կիրովականի ընտրական օկրուգում Ազգությունների Սովետի դեպուտատության թեկնածու գրանցված սովետահայ նշանավոր գրող Ստեփան Զորյանի և Միության Սովետի դեպուտատության թեկնածու գրանցված ժողովրդական նկարիչ, Ստալինյան մրցանակի լաուրեատ Մարտիրոս Սարյանի օգտին ագիտացիա մղելու վրա։ Դեպուտատության թեկնածուների կյանքի և նրանց բեղմնավոր գործունեության մասին ագիտպունկտում կազմակերպում են հետաքրքիր զրույցներ։

Իր շուրջը ավելի սերտորեն համախմբելով ագիտատորներին, գյուղական ինտելիգենցիային, ագիտպունկտը գնալով ուժեղացնում է ընտրողների մեջ կատարվող քաղաքական-մասսայական աշխատանքը։

# ԱԳԻՏԱՑԻՈՆ ԶՐՈՒՅՑ ԴԵՊՈՒՏԱՏՈՒԹՅԱՆ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐԻ ՕԳՏԻՆ

Հ. ՊՈՂՈՍՅԱՆ

*Դեպուտատության թեկնածուների օգտին մղվող ագիտացիոն աշխատանքի ուսանելի փորձ ունի Լենինականի Մոլոտովի անվան մանարան ֆաբրիկայի ագիտատոր Ռ. Վալեսյանը։ Դեպուտատության թեկնածուներ Աստղիկ Սարգսի Առաքելյանի և Ալեքսանդր Վասիլևիչ Գորբատովի գրանցումից անմիջապես հետո, նա ընտրողներին մանրամասնորեն ծանոթացրեց նրանց աշխատանքային գործունեությանը, հետաքրքիր և պատկերավոր կերպով պատմեց դեպուտատության թեկնածուների այն բոլոր արժանիքները, որոնց համար նրանք առաջադրվել են ՍՍՌՄ պետական իշխանության բարձրագույն օրգանում ընտրվելու համար։*

*Սկսելով ագիտացիոն հերթական զրույցը, ագիտատորն ունկնդիրներին ասաց. ընկեր ընտրողներ, Միության Սովետի ընտրությունների Լենինականի № 686 ընտրական օկրուգում ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտա-*



*տության թեկնածու է գրանցված Աստղիկ Սարգսի Առաքելյանը։ Նա մեր սովետական Հայրենիքի արժանավոր դուստրն է, որն իր ազնիվ ու անձնվեր աշխատանքով օրինակ է ծառայում հարյուրավոր բանվորների ու բանվորուհիների համար։ Դեպուտատության մեր թեկնածուն աշխատում է մեզ հետ միասին և ոչ մի ջանք չի խնայում երկրին ավելի շատ և ավելի բարձրորակ արտադրանք տալու համար։ Չնայած իր երիտասարդ հասակին, նա ունի աշխատանքային հիանալի անցյալ։ 1942 թվականին, մեր Հայրենիքի համար այդ ծանր օրերին, երբ դեռ նոր էր ավարտել միջնակարգ դպրոցը, նա փոխարինում է ռազմաճակատ մեկնած մարտիկներին, աշխատանքի անցնելով Մանվածքային ֆաբրիկայում, որպես շարքային բանվոր։ Նա որոշում է ոչնչով հետ չմնալ ռազմաճակատում մարտնչող մարտիկներից և անձնվեր աշխատանքով հավասարվել նրանց։ Ընդունակ, աշխատասեր 17-ամյա Աստղիկը, որը սիրասուն Հայրենիքի ազատությունն ու պատիվը ամենից բարձր էր դասում, շուտով հասավ իր նպատակին։ Նա 6 ամսվա փոխարեն 3 ամսում տիրապետեց ջուլհակի պրոֆեսիան և մեկ մեքենայի փոխարեն սկսեց աշխատել երկու մեքենայի վրա։ Բայց նա չի*

բավարարվում դրանով, ավելի խորը և ավելի բազմակողմանիորեն է ուսումնասիրում մանվածքային գործի տեխնիկան ու դառնում իր աշխատանքի իսկական վարպետը:

Նա ամեն տարի, ամեն ամիս և ամեն օր, թե՛ քանակական և թե՛ որակական ցուցանիշներով կատարում ու գերակատարում է արտադրական պլանը: Միայն անցյալ տարի ընկ. Աստղիկ Առաքելյանը տարեկան արտադրական պլանը կատարեց ժամկետից 3 ամիս շուտ և պլանից դուրս երկրին տվեց ավելի քան 86 հազար կիլոգրամ նախամանվածք: Մանվածքային գործի անվանի վարպետը իր աշխատանքի լավագույն փորձը սովորեցնում է տասնյակ երիտասարդ բանվորների ու բանվորուհիների: Վերջիններս իրենց վարպետի օրինակով կատարում և գերակատարում են արտադրական պլանները:

Այնուհետև ագիտատորն ընտրողներին պատմում է այն մասին, որ դեպուտատության թեկնածու Աստղիկ Առաքելյանը ո՛չ միայն առաջավոր բանվորուհի է, այլև ակտիվ հասարակական գործիչ:

Ունկնդիրներից շատերը ելույթ ունենալով, նույնպես նշեցին դեպուտատության թեկնածուի արժանիքները և միաժամանակ խոստացան ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրու-



թյունները նշանավորել աշխատանքային նոր հաջողություններով: Հաջորդ օրը, հերթական զրույցի ժամանակ գոհացուցիչ պատասխան տալով ունկնդիրների հարցերին, ագիտատորը նախ՝ նրանց հաղորդում է արտադրական այն հաջողությունների մասին, որ ընտրությունների օրերին ձեռք են բերել Լենինականի ձեռնարկությունների կոլեկտիվները և ապա՝ հանգամանորեն սկսում է պատմել Ազգությունների Սովետի ընտրությունների Լենինականի № 308 ընտրական օկրուգում ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու գրանցված Ալեքսանդր Վասիլևիչ Գորբատովի կենսագրությունը:

— Կյանքի և պայքարի հերոսական ուղի է անցել մեր դեպուտատության թեկնածուն,— ասում է ագիտատորը:— Քաղաքացիական կռիվների տարիներին նա քաջաբար կռվել է երիտասարդ սովետական ռեսպուբլիկայի թշնամիների դեմ և պաշտպանել մեր երկրի ազատությունն ու անկախությունը:

Ագիտատորն ընտրողներին պատմում է, որ ընկեր Գորբատովի ռազմական ընդունակությունները է՛լ ավելի ծավալվեցին Հայրենական Մեծ պատերազմի տարիներին: Նրա հրամանատարության տակ գտնվող զորամասերը փառավոր հաղթանակներ են տարել բազմաթիվ ճակատամարտերում:

Այնուհետև ագիտատորը պատմում է դեպուտատության թեկնածուի ներկա գործունեության մասին, որ նա աշխատում է մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում, սկսած 1946 թվականից ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ է, պարտիայի 19-րդ համագումարում ընտրվել է ՍՄԿՊ Կենտկոմի անդամության թեկնածու։ Մեր դեպուտատության թեկնածուն,— շարունակում է ագիտատորը,— իր լավագույն ծառայությունների համար արժանացել է կառավարական բարձր պարգևների։ Նրան շնորհվել է Սովետական Միության Հերոսի կոչում, նա պարգևատրվել է 20 շքանշանով ու մեդալով, այդ թվում՝ 3 Լենինի շքանշանով, 4 Մարտական Կարմիր Դրոշի, 2 Սուվորովի առաջին աստիճանի, Կուտուզովի առաջին աստիճանի շքանշաններով։

Դեպուտատության թեկնածուների օգտին ծավալված ագիտացիան ավելի բովանդակալից ու նպատակասլաց դարձնելու համար խոշոր օգնություն է ցույց տալիս ագիտպունկտը։ Այստեղ տասնյակ ագիտատորներ ամեն օր ընտրողների համար դեպուտատության թեկնածուների օգտին զրույցներ են կազմակերպում։ Ագիտպունկտը, թե՛ ագիտատորներին և թե՛ բոլոր ընտրողներին ժա-



մանակին տալիս է դեպուտատության թեկնածուների մասին կենսագրական անհրաժեշտ տեղեկություններ։ Բացի այդ, ագիտպունկտի ագիտատորները հաճախակի լինում են թաղամասերում և տնային տնտեսուհիներին, բազմազավակ մայրերին ու ծերունիներին, որոնք դժվարանում են սիստեմատիկորեն ագիտպունկտ հաճախել, պատմում են դեպուտատության թեկնածուների կենսագրությունները և պատասխանում նրանց հետաքրքրող հարցերին։

Դեպուտատության թեկնածուների օգտին մղվող ագիտացիոն աշխատանքում աչքի են ընկնում նաև ագիտատորներ Գ. Քերոբյանը, Ռ. Նիկոյանը, Դ. Մկրտչյանը, Ռ. Սարգսյանը, Գ. Քեշիշյանը, Ռ. Ոսկանյանը և ուրիշներ։

Այժմ ագիտատորները վստահելի անձերի հետ միասին նախապատրաստական լուրջ աշխատանք են կատարում կազմակերպելու ընտրողների հանդիպումը դեպուտատության թեկնածուների հետ։

Ագիտացիոն լավագույն աշխատանքի շնորհիվ ընտրողներն այժմվանից միահամուռ ցանկություն են հայտնում մեկ մարդու պես իրենց ձայնը տալու դեպուտատության թեկնածուներ Աստղիկ Առաքելյանի և Ալեքսանդր Գորբատովի օգտին։

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՕՐԻՆԱԿԵԼԻՈՐԵՆ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՎԵՆՔ ԳԱՐՆԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻՆ

1. Գյուղատնտեսության աշխատողների գլխավոր խնդիրն է՝ ապահովել մշակվող բոլոր կուլտուրաների բարձր բերքատվությունը։

2. Համառ աշխատանքով տիրապետել ագրոտեխնիկական գիտելիքները, այն իսպառ դնել հացահատիկի, բանջարեղենի և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բերքատվության բարձրացման կարևորագույն գործին։

3. Արմատավորել կոլտնտեսային արտադրության մեջ գիտության նվաճումները և առաջավոր փորձը։

4. Կոլտնտեսություններում լայնորեն արմատավորենք շարահերկ գյուղատնտեսական կուլտուրաների քառակուսի-բնային ցանքի և տնկման աշխատանքի առաջավոր մեթոդը։

5. Բանջարաբուծության մեջ համարձակորեն օգտագործենք տորֆա-հումուսային թաղարներում ցանք կատարելու պրոգրեսիվ մեթոդը։

6. Հացահատիկի և բանջարա-բոստանային կուլ-



տուրաների ցանքը կատարենք ժամանակին, առողջ, տեսակավոր և բարձր բերքատու սերմերով։

7. Ծավալենք սոցիալիստական մրցություն՝ գարնան գյուղատնտեսական աշխատանքները կազմ ու պատրաստ սկսելու համար։

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ՎԵՐԵԼՔԻ ԳՈՐԾՈՒՄ ԳԼԽԱՎՈՐ ԵՎ ՎՃՌԱԿԱՆ ԴԵՐԸ ՊԱՏԿԱՆՈՒՄ Է ՄԵՔԵՆԱՏՐԱԿՏՈՐԱՅԻՆ ԿԱՅԱՆՆԵՐԻՆ

1. Լայնորեն տարածենք ՄՏԿ-ների մեխանիզատորների աշխատանքի առաջավոր փորձը։

2. Ինչպես է նախապատրաստվել մեր մեքենատրակտորային կայանը գարնան գյուղատնտեսական աշխատանքներին։

3. 1954 թվականի բարձր բերքի ապահովման կարևորագույն պայմաններից մեկը տրակտորների և մյուս գյուղգործիքների անխափան աշխատանքն է։

4. Գարնան դաշտային աշխատանքներին գերազանց նախապատրաստվելը յուրաքանչյուր մեխանիզատորի առաջնահերթ խնդիրն է։

5. Ինչպես է նախապատրաստվում մեր տրակտորային բրիգադան գարնանացանը կազմ ու պատրաստ դիմավորելու համար։

6. Պայքարենք գյուղատնտեսական տեխնիկան առավել արդյունավետ օգտագործելու համար։

7. Լայնորեն ծավալել գյուղատնտեսական աշխատատար պրոցեսների մեքենայացումը։

8. Տրակտորային աշխատանքները կատարենք սեղմ ժամկետներում և բարձրորակ։

9. Ծավալենք սոցիալիստական մրցումը գարնանացանը գերազանց նախապատրաստությամբ դիմավորելու, տրակտորները և մյուս գյուղգործիքներն արտադրողաբար օգտագործելու, ագրոտեխնիկան խստորեն պահպանելու, 1954 թվականը բարձր բերքի տարի դարձնելու համար։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ — Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, էջ 56—72, Հայպետհրատ, 1952 թ.։

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ — Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում, էջ 5—28, Հայպետհրատ, 1953 թ.։

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ — ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին, զեկուցում ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, 1953 թ. սեպտեմբերի 3-ին, էջ 65—79, Հայպետհրատ, 1953 թ.։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի որոշումը՝ «Մեքենա-տրակտորային կայանների աշխատանքի հետագա բարելավման միջոցառումների մասին», առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1953 թ.։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը «ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառում-



ների մասին», 7 սեպտեմբերի, 1953 թ., առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1953 թ.։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի կողմից հրավիրված՝ ՄՏԿ-ների աշխատողների Համամիութենական խորհրդակցության մասնակիցների ԴԻՄՈՒՄԸ Սովետական Միության մեքենա-տրակտորային կայանների բոլոր բանվորներին, մասնագետներին և ծառայողներին, «Ս. Հ.» № 25, 30 հունվարի 1954 թ.։

Ինֆորմացիոն նյութեր ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի կողմից հրավիրված մեքենա-տրակտորային կայանների աշխատողների Համամիութենական խորհրդակցության վերաբերյալ, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի 21, 23, 24 համարներում։

Լուրջ ուշադրություն մեխանիզատորական կադրերի պատրաստմանը, առաջնորդող հոդված տպագրված «Ս. Հ.»-ի հունվարի 29-ի համարում։

Ինֆորմացիոն նյութեր ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի կողմից հրավիրված սովխոզների աշխատողների Համամիութենական խորհրդակցության վերաբերյալ, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի 29, 31, 32 համարներում։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի կողմից հրավիրված սովխոզների աշխատողների Համամիութենական խորհրդակցության մասնակիցների ԴԻՄՈՒՄԸ սովխոզների բոլոր բանվորներին, բանվորուհիներին, մասնագետներին և ծառայողներին, տպա-





*գրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի փետրվարի 9-ի համարում։*

Ավելի մոտ կանգնել կոլտնտեսային-սովխոզային արտադրության վճռական տեղամասերին, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի փետրվարի 5-ի համարում։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի ԴԻՄՈՒՄԸ բոլոր ընտրողներին, բանվորներին և բանվորուհիներին, գյուղացիներին և գեղջկուհիներին, սովետական ինտելիգենցիային, Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի ռազմիկներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի փետրվարի 11-ի համարում։*

---

Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Отдел Пропаганды и агитации ЦК КП Армении

№ 5 1954 г.

БЛОКНОТ АГИТАТОРА

*ՎՖ 09341 Պատվեր 239 Տիրաժ 8250*

*Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան*
*Կնունյանցի № 8, 1954 թ., գինը 50 կոպ.։*